## Հաղորդութիւն. Մատթ. ԻԶ. 26–29. Ա. Կորնթ. ԺԱ. 23–29

Յիսուս Նստաւ սեղանը՝ տուաւ հացը ու գինին,
Աշակերտաց շրջանին՝ է իմ արիւն և մարմին։
Ըսաւ ըրէք յիշատակ՝ զի իմ խաչին է խորհուրդ,
Թող միշտ մնայ նշանակ՝ որով առնէք դուք սնունդ։
Նախ ամեն ոք զինք փորձէ՝ ապա վայլէ սեղանէն,
Առաջ հացէն ճաշակէ՝ ետքը խմէ բաժակէն։
Հոս յիշելով զիս խաչիւ՝ կերէք այս հաց օրհնութեան,
Եւ զբաժակն սուրբ սրտիւ՝ խմէք արեանս է նման։

## Արտասուաց ձոր. Յուդ. Ա. 10

Մահը արդարը վշտէ ազատած տայ հանգստութիւն,
Փշալից կեանքէս արտասուաց ձորէն կը տանի փառաց,
Են որ չեն սիրեր այն վերին կոչման հրաւիրութիւն,
Քանզի չեն հաւատար կայ յաւէրժութիւն յետ մահու կենաց։
Մարդ երբ կը ծնի կըսկսի լալու ցաւեր ունի միշտ,
Այս ունայն կենաց յոյսերուն պատած կը մաշի սրտով,
Երբ որ կը մեռնի կը դադրին ցաւեր իւր կենաց և վիշտ,
Կերթայ վայլելու իր վարձատրութիւն մարմնով և հոգւով։
Կուլան մնացորդք իբրև յուսահատ և անմխիթար,
Ցոյս չունին անոնք թէ պիտի տեսնեն զիրար վերստին,
Հողով ծածկուած չքանալ ըսել խօսք ագիտաբար,
Ինչու որ չունին Աւետարանի լոյսը երկնային։

## Սրբութիւն ի մեղաց Եբր. Ա. 3

Արիւն Յիսուսի սրբէ ի մեղաց՝ ահա կը վազի Նա խաչին վրան,
Զոհ է Նա միակ ազգաց և ազանց՝ ահա զոհեալ կայ Նա խաչին վրան։
Ձեռքեր ու ոտքեր փայտին են գամած՝ փշեայ պսակ մը կայ գլխոյն վրան,
Նաև կողն ալ տէգով են խոցած՝ ահա զոհեալ կայ Նա խաչին վրան։
Մօտենանք խաչին սրտով խոնարհած՝ նայինք զղջումով այն զոհին վրան,
Որմէ վայելենք ներում մեր մեղաց՝ ահա զոհեալ կայ Նա խաչին վրան։

## Ապաւինութիւն Սաղմ. ԽԶ. 1-11

Մեր Տէր Աստուած է ապաւէն՝ և օգնական զօրութիւն,
Մենք չենք վախնար չարիքներին՝ թէ և գոռան ջուրք ծովուն։
Լեռներ ծովեր թէ ուռենան՝ թէ և սարսին ահռելի,
Գետոց վտակ միշտ կը ցընծան՝ ուրախ կ'ընեն բերկրալի։
Բնակարան Բարձրելոյն՝ Տէրոջ քաղաք անուանի։
Պիտի դիմեն Նորա սիրոյն՝ Տէրոջ որդիք սիրելի։
Նորա մէջն է մեր Տէր Աստուած՝ միշտ գթութեամբ մեզ կ'օգնէ,
Ո՛վ կը յուսայ Նորա դիմած՝ անկէ բարիք կը վայելէ։
Հեթանոսներ կը խռովին՝ և կը շարժին Բարձրեալէն,
Ձայնը լսած տես կը մաշին՝ ու կը սարսին նոյն ահէն։
Զօրաց Տէրը միշտ մեր հետ է՝ նեղութենէ կազատէ,
Եւ Յակոբին Տէրը մերն է՝ ամեն ատեն կը պահէ։
Մեր Տէր Աստուածը է ապաւէն՝ և օգնական զօրութիւն,
Մենք չենք վախնար չարիքներէն՝ թէ և գոռան ջուրք ծովուն։

## Կիւրակէ Յայտ. Ա. 10

Այս սուրբ օրուան օրհնութիւնը՝ ցօղէ մեզի սուրբ Հայր մեր։
Նաև մերին գոհութիւնը՝ քեզ ընդունէ ո՛վ Տէր մեր։
Քու շնորհացդ սուրբ Աթոռին՝ կը մօտենանք խոնարհած,
Եւ կաղաչենք արտասուագին՝ ներէ մեզի Հայր գթած։
Ի՛նչ անուշ է սուրբ Կիրակին՝ տուիր ճաշակ նա մեզի,
Որ համն առնենք օրն հանգստին՝ այն երկնային շաբաթի։
Երկնից դռներ մեզ բանալով՝ կուտաս պարգև Հայրական,
Եւ մենք զորս վայելելով՝ կըլլանք խոնարհ օրհնաբան։

## Սուրբ Գիրք Բ. Տիմօթ. Գ. 14-17

Աստուածաշունչ սուրբ Մատեան՝ անգին գանձս մի միայն,
Մէջ կենացս ցաւալի՝ զքեզ ունիմ սիրելի։
Դուն ես միակ ուսուցիչ՝ և անմոլար իմ ուղղիչ,
Որով միշտ զիս կը վարժես՝ որ օգտուիմ դասէրէս։
Ողորմութեամբն Աստուծոյ՝ և շնորհիւ սուրբ Հոգւոյն,
Առաջնորդէ միշտ զիս դու՝ չ'ընկերանամ չարերու։
Թէ և ըլլայ սխալիմ՝ մեղաց մէջը գլորիմ,
Դու ես կուտաս ինծի լոյս՝ որ ես դիմեմ դէպ ի լոյս։

## Շաբաթ Յայտ. ԻԱ. 1–4

Քու շաբաթներդ երկրի վրայ՝ ով Տէր որչափ կը սիրեմ,
Երկինքին մէջ մշտանձնայ՝ սուրբ շաբաթին կըսպասեմ։
Հոն երկրաւոր մտածութիւն՝ նաև հոգեր չեն մտներ,
Հոն յարատև ուրախութիւն՝ և օրհնութեան կան երգեր։
Ուրկէ ցաւեր հիւանդութիւնք՝ և փորձութիւնք կան հեռի,
Հոն ցընծալի երանութիւնք՝ խաղաղութիւն լի ու լի։
Ճամբորդութիւնս երբ կատարած՝ երբոր ես հոդ քեզի գամ,
Հրեշտակաց հետ միացած՝ փառք և պատիւ միշտ պիտի տամ։

## Յաւէրժութիւն Հռոմ. Զ. 22–23

Դու այն երկնից բարձրութենէն՝ ով վեհ աննիւթ իմաստու-
թիւն,
Մանկանացուիս յուզեալ սրտէն՝ սորվիլ կուտաս յաւերժու-
թիւն։

Հողէ շինուած մէջ վրանիս՝ անտանելի կայ նեղութիւն,
Է մխիթար այսմ վշտիս՝ այն Սփոփիչն յաւէրժութիւն։
Քու ազդումդ գիս կը տանի՝ այն գաւառին ի բարձրութիւն,
Ուր չարութիւն կը դադարի՝ հոն ես ունիմ յաւէրժութիւն։
Միշտ կը նայի իմ աչք երկրէ՝ դէպ ի վերին այն սրբութիւն,
Իմ հայրենիքս այն տեղը է՝ ուր կայ միայն յաւէրժութիւն։
Կը լեցնես սրտիս իղձը՝ մէկղի ձգած ունայնութիւն,
Եւ աշխարհիս ամեն կեղծը՝ գիս կը տանիս յաւէրժութիւն։
Այո ով դու մխիթարիչ՝ որ ես միայն սփոփութիւն,
Կենաց գետէն զովացուցիչ՝ խմել կուտաս յաւէրժութիւն։
Ապա ձգած այս կենաց չինչ՝ նաև մարմնոյ հոգածութիւն,
Թողլով զանոնք իբրև ոչինչ՝ կուգամ գտնել յաւէրժութիւն։
Մահը չէ մահ նա է իսկ կեանք՝ կեղծ կը տեսնէ իմ տեսութիւն,
Նա ցուցուցած իր վերին փառք՝ գիս կը տանի յաւէրժութիւն։
Թող ալ մնան ինչ որ հոս կան՝ զորս պատուէ մարմին արիւն,
Հոն ոչինչ է այս ցանկական՝ ուր կը տիրէ յաւէրժութիւն։
Երբէք չըլլայ որ գիս կապտէ՝ այս կենացս զուարճութիւն,
Թող ես նայիմ ինչ որ վեր է ով դու անմահ յաւէրժութիւն։
Այս աշխարհիս ասպարէզը՝ ունի ցաւեր և տրտմութիւն,
Ո՛հ կը փութամ տուր ինձ սիրտ մը՝ փնտռել միայն յաւէրժու-
թիւն։

Ծարաւութեան մեծ փափագով՝ քեզ կը դիմեմ ի զովութիւն,
Ծարաւ հոգիս ո՜հ վայլելով՝ անմահ ջրէդ յաւէրժութիւն։
Մահն է վճիռ մեզ ծնելոց՝ օր մը մէկէն կուտայ ողջոյն,
Նա կ՚ամփոփէ ամենն իր ծոց՝ անկէ ետքը յաւէրժութիւն։
Կայ օթեւան երկ վիճակի՝ որոյ ժառանգ է հաստատուն,
Մէկն է փառքի մէկն է վայի՝ ուր պիտի տայ յաւէրժութիւն։
Ա՜հ երանի կ՚ըսեմ անոնց՝ որք կը սիրեն զսրբութիւն,
Կերթան հանգչիլ ընդ արդարոց՝ այն երջանիկն յաւէրժութիւն։

## Այն մէկ բանը որ պէտք է Ղուկ. Ժ. 41–42

Մարթա ինչո՞ւ այդչափ պէտքեր՝ այդ հոգերով պաշտո՞ւելէ,
Մարիամ սիրեց լսել պատուէր՝ այն մէկ բանը որ պէտք է։
Մարթա գիտեմ ունիս հոգեր՝ այն կերեւեաց պիտոյք է,
Մարիամ նստած ինձ կը լսէր՝ այն մէկ բանը որ պէտք է։
Ո՛վ ժիր Մարթա հոգ մի ըներ՝ մարմնոյ պէտքը խիստ քիչ է,
Մարիամ ընտրեց հոգւոյն խօսքեր՝ այն մէկ բանը որ պէտք է։
Ձեզ ալ խրատ ո՛վ Մարթաներ՝ մի տագնապիք հոգերէ,
Միշտ սիրեցէք մեծ շահարեր՝ այն մէկ բանը որ պէտք է։
Եւ դուք սիրուն ո՛վ Մարիամներ՝ նստէք լսել խօսքերէ,
Զի իմ խօսքեր է կենսաբեր՝ այն մէկ բանը որ պէտք է։

## Քրիստոսի Նպատակը Եբր. ԺԲ. 2

Հօր միածին մարդ եղաւ՝ որ մեզ եղբայր անուանէ,
Նա խոնարհած վար իջաւ՝ որ մեզ երկինք վեր հանէ։
Իւր փառք ծգեց աղքատցաւ՝ որ մեզ հոգւով լեցունէ,
Վիշտ տանելով խաչուեցաւ՝ որ մեզ մեղքէն ազատէ։
Փայտին վրայ գամուեցաւ՝ որ իւր մահով մեզ փրկէ,
Եւ թուք կրեց ծեծուեցաւ՝ որ մեզ չարեաց միշտ ներէ։
Անարգուած խոցուեցաւ՝ որ իւր վէրքով բժշկէ,
Եւ յարութեամբ վերացաւ՝ որ մեզ շնորհք պարգեւէ։
Էմմանուէլ ըսուեցաւ՝ որ մեզ իրեն որդեգրէ,
Կենաց լոյսը մեզ բացաւ՝ որ մեզ հոգւով մկրտէ։

## Երկնից Տունը Յայտ. ԻԱ. 1–27

Արժանացուր մեզի ո՛վ Տէր՝ մտնել երկնից սուրբ տունը,
Հոնկէ հեռի են միշտ ցաւեր՝ հոն կը վայլենք հանգիստը։

Պատրաստեցիր հոն շնորհքներ՝ հաւատարիմ կեցողին,
Հոն են գրուած այն անուններ՝ որք համբերած տոկացին։
Փառաց պսակ եւ հիւսեր՝ դոհարներով զարդարուած,
Փոխան կենացս փշտաբեր՝ կայ ոսկեղէն գահ փառաց։
Հոն կը դադրին արտասուքներ՝ նաեւ միշտին այն ցաւը,
Հոն կը հանգչին այն արդարներ՝ հոն կը վայլեն հանգիստը։

### Ընդունէ՛ իմ հոգիս Գործ. է. 58

Այն մահուան մօտ ժամուն կաղերսեմ՝ հանէ՛ Տէր մեղմութիւն տալ վշտիս,
Եւ կենացս վերջ շնչոյն կաղաչեմ՝ Տէր Յիսուս ընդունէ իմ հոգիս։
Այս կենաց վիշտերէն ունիմ լաց՝ տրտմութիւն կայ պատած մէջ սրտիս,
Իմ բոլոր վիշտերէս ազատած՝ Տէր Յիսուս ընդունէ իմ հոգիս։
Ո՛վ դու մահ բարեկամ արդարին՝ սրբելով արցունքէն աշխարհիս,
Կը տանիս ի հանգիստ երկնային՝ հոն Յիսուս ընդունէ իմ հոգիս։

### Խաչդ առ Մատթ. ԺԶ. 24

Իջայ յերկնից քեզ այցելել՝ փութա ետիս եկուր,
Եկայ իմ դաս սորվեցունել՝ խաչդ առ ետիս եկուր,
Խաչդ առ՝ խաչդ առ՝ խաչդ առ ետիս եկուր։

Իմ բեռս է փոքր թեթեւ՝ յուսդ առած եկուր,
Եւ իմ լուծս քաղցր է նաեւ՝ խաչդ առ ետիս եկուր,
Խաչդ առ՝ խաչդ առ՝ խաչդ առ ետիս եկուր։

Դու ուրացիր թող այս կեանքը՝ ծդէ այս չինչ ինձ եկուր,
Եւ աշխարհիս փառաց գահը՝ խաչդ առ ետիս եկուր,
Խաչդ առ՝ խաչդ առ՝ խաչդ առ ետիս եկուր։

### Ճանապարհ կենաց Յովհ. ԺԴ. 6

Ո՛վ Տէր միակ դու ճանապարհ՝ որ կը տանիս ի յերկին,
Առանց քեզի մատչիլ առ Հայր՝ չիք հաշտարար բնաւին։

*Դու ես միակ ճշմարտութիւն՝ և սփոփիչ նեղեալին ;*
*Դու բարեկամ մեղուցելոյն՝ քեզմով մեղքեր կը սրբուին։*
*Դու ես Հովիւ դուռն և կեանք՝ և յորդահոս ջրհոր լին,*
*Երբ հաւատով մենք քեզի գանք՝ մեր ծարաւներ շուտ կ'անցնին։*
*Դու ես միջնորդ և բարեխօս՝ քեզ հաւատով դիմողին,*
*Քու աշակերտք են միշտ ի յոյս՝ կան աղօթիւք ջերմագին։*

## Հանգիստ Եբր. Դ. 9

*Աչքս տնկած ու շուարած՝ երբ փնտռեցի ես հանգիստ,*
*Աշան մարդիկ ինծի ըսած՝ հոս կայ հանգիստ հոս հանգիստ։*
*Բայց իմ կեանք էր այէս պանդխտին՝ իբրև մի հիւր անհանգիստ,*
*Հոն կը հնչէր ձայն իմ սրտին՝ հոս չիք հանգիստ չիք հանգիստ։*
*Նեղութիւններ նաև վիշտեր՝ ըրին սիրտս անհանգիստ,*
*Եւ խօսեցան գիս խաբողներ՝ հոս կայ հանգիստ հոս հանգիստ։*
*Անապատ է այս աշխարհը՝ ո՛վ կայ անցաւ և հանգիստ,*
*Ամեն մէկը ունի ցաւ մը՝ հոս չիք հանգիստ չիք հանգիստ։*
*Ի՞նչ անուշ է Տէր խոստումդ՝ ի Տէր ննջողք են Հանգիստ,*
*Հոն կը վայլեն օրհնութիւնդ՝ հոս կայ հանգիստ հոս հանգիստ։*
*Հոն ազատած իմ ցաւերէս՝ պիտի ըլլամ ես հանգիստ,*
*Զըլլայ խաբուիմ սոյն աշխարհէս՝ հոս չիք հանգիստ չիք հան-գիստ։*
*Հոն ցնծութեամբ պիտի երգեմ՝ սիրուն անունդ ո՛վ հանգիստ,*
*Հոն վայելմամբ պիտի ձայնեմ՝ հոս կայ հանգիստ հոս հանգիստ։*

## Վիմադիր տուն Մատ. Է. 24–25

*Վէմի վրայ է շինուած՝ հոգւոյս տունը հաստատուած,*
*Ապաստարան և իմ յոյս՝ է Փրկիչս Տէր Յիսուս,*
*Տուն հիմնադիր անկործան՝ վէմս անշարժ փրկչական։*
*Թէ կայծակներ շանթարկեն՝ թէ անհարկու ջուրք յորդեն,*
*Եւ ալ հովեր խիստ փչեն՝ վէմս անշարժ ապաւէն,*
*Տուն հիմնադիր անկործան՝ վէմս անշարժ փրկչական։*
*Է կեանք միակ իմ հոգւոյս՝ և իր արեամբ խրախոյս,*
*Վիշտք նեղութիւնք երբ ինձ'գայ՝ հոգիս Փրկչիս կը յուսայ,*
*Տուն հիմնադիր անկործան՝ վէմս անշարժ փրկչական։*
*Երբոր հնչէ ձայն փողոյն՝ պիտի դիմեմ իր գթոյն,*
*Նորին արեամբ լուացուած՝ պիտի ըլլամ սրբուած,*

Տուն հիմնադիր անկործան՝ վէմս անշարժ փրկչական ։
Աշխարհի մէջ ի յերկին՝ Տէր իմ եղիր իմ բաժին ,
Թէ և աշխարհ կործանի՝ եմ ապաստան քոյդ վէմի ,
Տուն հիմնադիր անկործան՝ վէմս անշարժ փրկչական ։
Թէ և դիպքեր փախցնեն՝ Թէ և ջուրեր վնասեն ,
Անշարժ է իմ շինուած՝ վէմին վրայ հաստատուած ,
Տուն հիմնադիր անկործան՝ վէմս անշարժ փրկչական ։
Չի կայ բնաւ ինչ կայուն՝ որ միշտ մնայ մնայուն ։
Ամեն իրեր տես կանցնին՝ Աստուած միակ իմ բաժին ,
Տուն հիմնադիր անկործան՝ վէմս անշարժ փրկչական ։
Արդ խոնարհած սուրբ դռնին՝ և կաղաչեմ սրտագին ,
Որ զիս վէմին հաստատէ՝ վտանգներէ ազատէ ,
Տուն հիմնադիր անկործան՝ վէմս անշարժ փրկչական ։

## Ահա կուգամ Յայտ. ԻԲ. 12

Շուտ արթնցիր ով իմ հոգիս՝ լսէ ձայն մը կուգայ սրտիս,
Կըսէ եկիր ահա կուգամ՝ ես Փրկիչդ որ քեզ վարձք տամ։
Թէ նենգողներ ըզքեզ նեղեն՝ Թէ թշնամիք շուրջդ պատեն,
Լեր համբերող ահա կուգամ՝ ես Փրկիչդ որ քեզ վարձք տամ։
Լեր ջանացող խոնարհ ու հեզ՝ Խաչդ առած էջ ասպարէզ,
Արիացիր ահա կուգամ՝ ես Փրկիչդ որ քեզ վարձք տամ ։
Տէրունական սուրբ սեղանին՝ երբ մերձենաս սուրբ խորհրդին,
Մահս յիշէ ահա կուգամ՝ ես Փրկիչդ որ քեզ վարձք տամ։
Յուսակտուր մի արտասուեր՝ երբ սիրելիքդ ննջեն ի Տէր,
Քաջալերուէ ահա կուգամ՝ ես Փրկիչդ որ քեզ վարձք տամ։
Մի՛ վհատիր սրտիւք թմրած՝ Թէ յապաղի կառքդ այն անց,
Պատրաստուէ ահա կուգամ՝ ես Փրկիչդ որ քեզ վարձք տամ։
Երբոր դադրին բազկիդ զարկեր՝ լոյսէ զրկին նաև աչքեր,
Տանիլ ասկէ ահա կուգամ՝ ես Փրկիչդ որ քեզ վարձք տամ։

## Բաժանման վնասը Մատթ. ԺԲ. 25

Արիւն Յիսուսի սրբիչ է մեղաց՝ և է քաւութիւն ազգաց և ա-
ղանց ,
Ձևերով կըսեմ որք անջատեցան՝ ազգութեան կապէն խզուած
հեռացան ։
Որոնք կարծեցին այսպէս զատուելով՝ պիտի բազմանան և ա-
ճին հոգւով ,

Ինչ ինչ ձեւերու եւ ալ վէճերու՝ խաղեր խաղալով կեցան խըն-
կարկու :
Վերջ Թշնամանօք իրար ննդեցին՝ այսպէս վարուիլը օգուտ
սեպեցին ,
Բոլորք բաժանմամբ իրարու տուած՝ սիրոյ աղբիւրէն եղան հե-
ռացած :
Կարդացին քարոզք բեմերու վրայ՝ մեր տունէն ի զատ փրկու-
թիւն չիկայ ,
Այսպէս չեղեցան եւ ալ ծռեցան՝ ճշմարիտ ճամբէն ճշտիւ հե-
ռացան :

Հոգի· ժողվ· ԺԲ· 7

Գոյութիւն հոգւոյ անուրանալի՝ յորմէ բուսականք նաեւ կեն-
դանիք ,
Կ'աճին կը մեծնան մէջ իւր սահմանի՝ նաեւ կը շարժին վայելելով
բարիք :
Իսկ անմահութիւնն տես ահա յայտնի՝ անյագ ցանկութիւն
միշտ կայ ի մարդիկ :
Ի հունաւորէ անհուն չի ծնի՝ անհունն ծնի զայն անհուն վեհ
ծիրք :
Գոն անտես աչաց եւ մեզ չերեւի՝ կրնա՞նք մի ըսել չունինք մենք
խելք միտք ,
Անտես է եւ զայն նկարիչ չունի՝ ո՛վ կրնայ ըսել է ցնորելիք :
Բայց վարձատրութիւն ցանկութեան սրտի՝ է վայելումն հոգ-
ւոյն այն բարիք,
Եւ ի զրկմանէ սիրտք մեր կը ճնշի՝ որմէ կը ծնի անհուն լի չարիք:

Յիսուսի արիւնը մեզ կը սրբէ բոլոր մեղքերէն Ա· Յովհ· Ա· 7

Կեդրոն միութեան Յիսուսի զոհը՝ օրէնքին գործքէն չէ քաւու-
թիւնը ,
Որք ի Քրիստոս են սիրով հաւատով՝ են սրբուածներ տաճար
սուրբ հոգւով,
Տեսի՛ր վտակներ կուղղեն կեդրոնին՝ նա միայն ջրհոր ծարաւեալ
սրտին ,
Խաչին այն զոհին որոնք են դիմած՝ ի փրկութենէ չեղան զրկ-
ուած :

### Հաւատով արդարութեան Եբր. Ժ. 38։ Ամբակում Բ. 4

*Աստուածային արդարութեան օրէնքը*, Ելից Ի. 1–17 Բ. Օրինաց Ե. 6–21։
*Օրէնքին անթերի պահանջումը*, Յակոբ. Բ. 10–12։ Բ. Օրինաց ԻԷ. 26։
*Անէծքը*, Բ. Օրինաց ԻԸ. 15։ Գաղատ. Գ. 10։
*Սուերական քաւութեան արիւնը*, Թուոց ԻԸ. 1–31, ԻԹ. 1–40։
*Մէկ արդար մը չիկայ*, Սաղմ. ԺԴ. 1–3, ԾԴ. 1–3։ Հռովմ. Գ. 11–20։
*Ամեն ալ դատապարտուած են*, Հռովմ. Բ. 1–2։ Գաղատ. Ե. 19–20։
*Աստուածային ողորմութեան շնորհքը*, Հռովմ. Ը. 1–4 Գ. 21–24։
*Թերութեանց ներողութիւնը*, Ա. Յովհ. Բ. 1–2։ Ա. Տիմոթ Բ. 5։
*Օրհնութիւնը*, Հռովմ. Ա. 5–7։ Եփես. Ա. 1–13։
*Իրական քաւութեան արիւնը*, Եբր. Ժ. 12–14։ Ա. Յովհ. Ա. 7։
*Դատապարտութենէ ազատիլը*, Գաղատ. Գ. 1–29։ Եփես. Բ. 12–22։

### Բովանդակութիւն Յակ. Բ. 19

*Երթանք հաւատով Յիսուսի Փրկչին՝ ապաշաւելով ի մեղաց Ներքին,*
*Եւ մկրտութեամբ սուրբ աւազանին՝ Հոգւոյն շնորհօք կը ծը- նինք կրկին։*
*Մաքրինք ի սեղան սուրբ յիշատակի՝ փորձել մեր անձեր է պատուէր Նորին,*
*Սրբիչ է մեղաց արիւն Յիսուսին՝ որ հեղաւ խաչին մեղացս աշ- խարհին,*
*Չէ մեզ բաւական հաւատք մեր բերնին՝ և դեռ հաւատան որմէ կը սարսին,*
*Պարտինք կատարել կամքը Յիսուսին՝ հաւատով յուսով և սի- րով սրտին։*
*Այս խօսք է պատուէր Աւետարանին՝ այս իսկ հրաւէր և ձայն երկնային,*
*Զըլլայ մեզ ծուլն քարոզք մարդկային՝ տալով մեզ դասեր ծնունդք մտային։*

## Գողգոթա Յովհ. Ձ· 26

Գողգոթային խաչին առջև՝ որդ խոնարհինք ծնրադրած,
Ուր կը սրբի մեր մեղքը սև՝ զոհին արևամբ լուացուած։
Հոս նայողներ կը բժշկին՝ մեղաց խոցէն ընդդցած,
Հոս դիմողներ կը մաքրուին՝ մեղաց աղտէն սրբուած։
Հոս կայ միայն հանգստութիւն՝ ծանրաբեռին այն հոգնած,
Հոս կը վայլենք թեթևութիւն՝ որ կը շնորհէ Հայր գթած։
Երբոր իջնենք անկէ ի վայր՝ երկրպագել առ Աստուած,
Պիտի տեսնենք ձև ու նկար՝ են մտային արարուած։
Ալ քաշքշուկ մէկդի ձեան՝ չիտակ երթանք առ խաչուած,
Բաւ է մեզի կենաց սուրբ բան՝ հաց է նա մեզ պարգևած։
Մի է հաւատք մկրտութիւն՝ մի է Տէրը մեր Աստուած,
Արևամբ Փրկչին կայ սրբութիւն՝ երկնից ներքև մեզ տրուած։
Հոս այլ և այլ մեկնութիւններ՝ չիկան երբէք ձևացած,
Հոս պէտք հաւատք նաև յոյս սէր՝ հոս մօտենանք խոնարհած։
Թէև անթիւ կան բաժանմունք՝ Գողգոթայէն չեն սորված,
Եկեղեցեաց է այս վիճմունք՝ հաց և ձուկի խնդրուած։
Զգենք մէկդի այն արտաքին՝ սուր նետերը է հարուած,
Ներենք իրար սիրով Փրկչին՝ ըլլանք սիրով միացած։
Են քարոզիչք կը քաշքշեն՝ գառնուկները մոլորած,
Կան և քիչ են կը քարոզեն՝ բաժանումներ անարգած։
Էր երանի՛ ըլլայինք մենք՝ կենաց բանէն միշտ սորուած,
Էր երանի՛ ըլլայինք մենք՝ խաչին դասէն դաս սորուած։

## Խորհուրդ Յակ. Դ· 1–4

Խորհուրդ կըսեն այն բանին՝ ուր կայ պահուած գաղտ-
նութիւն,
Եթէ չիկայ հոն գաղտնիք՝ անմտական մանկութիւն։
Մինն թաղած մինն կանգնած՝ մին սրսկմամբ մկրտէ,
Սոյն խորհուրդը ամեն ոք՝ ըստ իւր դատման կը ձևէ։
Մինն կըսէ մկրտութիւն՝ կնիք վերին ծննդեան,
Միւս կըսէ ոչ այլ ինչէ՝ թլփատութեան է նշան։
Մինն տեսիր հաց կը շաղէ՝ խմորաղուրկ ալիւրով,
Իսկ միւսը հաց կը շաղէ՝ խմորաղիր ալիւրով։
Մինն նաև բաժակին մէջ՝ ջուր կը դնէ ցրտացած,
Իսկ միւսը ջուր կը դնէ՝ քիչ մը զանի տաքցուցած։

Մինն կըսէ գոյափոխեալ՝ է իսկական սուրբ մարմին,
Իսկ միւսը է նշանակ՝ կըսէ հացը ու գինին։
Այսպէս իրար հակադիր՝ եկեղեցին պառակտած,
Այլայլեցին ամեն իր՝ ընդ անիծիւք դրոշմած։
Սոյնանման շատ մը բան՝ զարդարելու խորհրդով,
Եկեղեցին բաժնեցին՝ թշնամական նենգերով։
Ինչ ինչ իրեր քաշքշած՝ մտաւ մէջը անջատում,
Այսպէս տուներ բաժնուած՝ իրար տուին գլորում։
Բաժնուելով իրարմէ՝ տուին իրար անարգանք,
Կործանեցան ցրուեցան՝ թշնամացան այն համայնք։
Իմ սիրելիք հեռացէք՝ սոյն վէճերէն դուք այս օր,
Որ ստանաք միութիւն՝ զոր կորուսիք մինչ այս օր։
Երթանք կարդալ սուրբ գիրքը՝ նա օրինակ մեզ կուտայ,
Եւ չշեղինք այն ճամբէն՝ կան Առաքեալք մեզ վկայ։
Տես սուրբ գիրքը մեզ կըսէ՝ և կը մնայ հետեւինք,
Չէ թէ մարդոց ըսուածքին՝ կարծիքներու մէջ ծուինք։
Ցարանուանեալ անուններ՝ են մարմնաւորք ըստ գրոց,
Նաև կըսեմ բաժանում՝ է նենգութեան մեծ խարոց։

## ԱՆՃԱՆՈՒԻՐՈՒԹԻՒՆ Հռովմ. Ը. 35-39

Աշխարհիս մէջ ո՛վ որ կուզէ Աստուածապաշտ ապրելու,
Թող խաչն առնէ յետ Յիսուսի չարչարանաց քալելու,
Քիչք բարեկամք շատ թշնամիք տես հալածեն ամեն օր,
Նախատինքներ և զրկումներ միշտ կը թափեն նորանոր։

Թէև անուշ Տէրոջ խօսքեր բայց աշխարհի ատելի,
Թէև անուշ Տէրոջ պատուէր չարագործին մերժելի,
Նայէ ո՛վ Հայր դու երկինքէն քեզ սիրողին սիրտ ցաւեր,
Որ կը տանջի ակարութեամբ որոյ բաժին կայ լացեր։

Թէ կայ հնար թող այս բաժակ անցնի ինձմէ գթօրէն,
Թէ ոչ ո՛վ Հայր քու կամքդ ըլլայ որ ես միակ տնօրէն,
Դուն քու զաւկիդ կուտաս ցաւեր որ փորձուած ընտրուի,
Դուն քու զաւկիդ կուտաս խաչեր համբերութեամբ կրթուի։

Հնազանդած կը խոստանամ չը բաժնուիլ քու սէրէդ,
Ոչ հալածանք ոչ տառապանք պիտի զատեն քու խաչէդ,
Եւ ոչ ալ մահ և ոչ աշխարհ պիտի բաժնեն զիս Փրկիչ,
Հոգիս մարմինս քեզ կը զոհեմ անմահութեամբ ազատիչ։

Ես չեմ կարող հաւատարիմ խոստմանս մէջ մնալու,
Միայն Հոգւոյդ սուրբ շնորհօք կը վստահիմ կենալու,
Շնորհէ՛ ով Հայր չունենամ պարծանք բաց ի խաչին այն
զոհէն,
Շնորհէ՛ ով Հայր որ համբերեմ ցաւոց վշտացս համօրէն։

---

Հայաստանեայց սուրբ Առաքելական Եկեղեցին կըն-
դունի մանկամկրտութիւնը, կնքահօր դաւանութիւնը, թաղելով ի ջուր, մեղաց թողութիւնը, և վերածնիլն ի Հոգւոյն Սրբոյ։

Երիցականը կընդունի, մանկամկրտութիւնը, ծնողաց դաւանութիւնը, ջրով սրսկումը, ոչ մեղաց թողութիւնը, այլ իբրև նշան թլփատութեան կը համարի։

Ոչ մանկամկրտիչեանք, կընդունին, խելահասից մը-
կրտութիւնը, ինքնադաւանութեամբ, թաղելով ի ջուր, մեղաց թողութիւնը, վերածնիլ ի Հոգւոյն Սրբոյ, նախ և ապա։

Պառակտումն եկեղեցւոյ Ա. Տիմոթ. Զ. 10

Քրիստոնէական Սուրբ Եկեղեցին երբ միութեամբ էր,
Հարք ինչ որ գրեցին նաև ալ ըսին անկեղծութեամբ էր,
Բայց ետքէն եկողք երբ բաժնուեցան տուին մեծ աւեր,
Եւ այլայլեցին բացին չահերու և փառաց դռներ։
Աթոռներ ձևեր և առաջնութեան շատ մը կռիւներ,
Տիրապետելու նախագահութեամբ իշխանութիւններ,
Այսպէս իրարու տուին նենգութեամբ խստիւ հարուածներ,
Զարին հետևած մթութեան հոգւով եղան դեսպաններ։
Ո՞ւր էր Յիսուսի սիրով կտակած սիրոյ սուրբ պատուէր,
Ո՞ւր էր միութիւն՝ ո՞ւր էր սրբութիւն երկնային ձիրքեր,
Մէկդի ձգելով եղան պաշտելու ոսկի արծաթներ,
Որով չեղեցին նաև ծռեցին կենաց պատգամներ։

Տեսիր մոլորած մարդիկ ընթացան դէպ ի խոր մութեր,
Փառասէր սրտիւ նախագահեցին ստութեան հայրեր,
Եւ արգիլեցին կարդալ սուրբ գրոց լուսատու մասեր,
Որով չերևին չարեօք գործուած իրենց այն վատեր:

Եթէ այս այսպէս ձգէ դու զանոնք գնա առաջներ,
Քալէ նախնոյն մէջ լի ճշմարտութեամբ եղիր պտղաբեր,
Պահէ աւանդը սրտի սրբութեամբ հաւատ, յոյս, ու սէր,
Որով վայելես սպասկն կենաց Տէրն է պատրաստեր:

Սուրբ Աւետարան է մեզ ուղեցոյց շնորհք երկնաբեր,
Յորում կատարեալ կան դրոշմուած կենաց իսկ պատուէր,
Բայց յարանուանեալք ունին առաջնորդ կարծիք մտաբեր,
Որով են չեղեալք նաև բաժանեալք իրար նենգողներ:

## Աղօթք միութեան Յովհ. ժէ. 21–23

Ո՛վ սուրբ Հայր՝ սիրեցիր մեզ, և մեր փրկութեանը համար քու միածին սիրելի որդիդ Յիսուս Քրիստոսը հաճեցար խաչին յանձնելու և անալ հոգւով յօժարած համբերեց խաչին ցաւոց, որ իր խոցերովը բժշկէ զմեզ, և մեղաց դատապարտութենէ ալ ազատէ:

Արդ այս ամեն շնորհացդ համար խոնարհած կաղաչենք ո՛վ սուրբ Հայր, հիմայ բարեհաճէ՛ ևս տալ մեզի՝ սիրոյ միութիւնը, Հոգւոյն սուրը, սերմին պտղաբերութիւնը, Աւետարանի պատուիրանաց հնազանդութիւնը, որով որդեգրութեան շնորհացը արժանացած հոգւով և ճշմարտութեամբ երկրպագութիւն մատուցանենք քեզ սուրբ Հօրդ, և միածին Որդւոյդ, և կենդանարար սուրբ Հոգւոյդ հիմայ ու միշտ և յաւիտեանս յաւիտենից ամէն:

## ԴԱՐԱԿԱՆ ԾՆՈՒՆԴՔ

Ըստ Եկեղացական Պատմութեանց փախճանած այն նշանաւոր եւ ժամանակակից հայրերէն մէն մի անուն նշանակած եմ բուականաւ ի վկայութիւն:

### Ա. դար

*Յարութեան և հոգեգալստեան տօները կային։*

### Բ. դար

*Էր պարզ* Ս. *Պօղիկարպոս*, 170,

### Գ. դար

*Մանկամկրտութիւն վէճի տակ, ծոմ պահքի փոխուած, եկեղեցական աստիճաններ, Մեռոնել օծել։ Տէրտուղիանոս,* 216:

### Դ. դար

*Եկեղեցական լաթեր, Աւագ ուրբաթ, Քրիստոսի ծննդեան տօն, մարտիրոսաց և հրեշտակաց տօն, խաչին մեծարանք, Ննջեցելոց աղօթք, ուխտագնացութիւն, մասանց յարգութիւն տալ։ խնկել և կանթեղ վառել։* Աթանաս 371։

### Ե. դար

*Սուրբ Կոյսի վերափոխման տօն։ Նզովքի ճոխութիւն յեկեղեցիս։ Ոսկեբերան* 449։

### Զ. դար

*Առաքելոց տօն, Սուրբ Կոյսի անարատութեան տօն, Աւետման տօն և Ջուր օրհնել։ Գրիգոր մեծ* 504։

### Է. դար

*Սուրբ Կոյսի ծննդեան տօն։ Անանիայ վարդապետ* 602,

### Ը. դար

*Պատկերաց յարգութիւն, ի Հայս* Ա. *դար ըստ Խորենացւոյն դաստառակ Քրիստոսի։ Յոհան Օձնեցի* 705։

### Թ. դար

Եկեղեցականները օծել։ Յօհաննէս Դամասկացի 860։

### ԺԱ. դար

Կուսակրօնութիւն ուխտիւք, կար նաև ի նախնիս։
Գրիգոր Նարեկացի 1003

### ԺԲ. դար

Սուրբ Կոյսի յղութեան տօն, և եօթ խորհրդոց դասակարգութիւնք որք ի Սուրբ Գիրս նշանակուած էին, կար իսկզբան։
Ներսէս Շնորհալի 1198։

### ԺԳ. դար

Քահանայից խոստովանութիւն, և հաղորդութեան մեծարանք։ Մեծն Վարդան 1220։

### ԺԴ. դար

Սուրբ Կոյսի այցելութեան Եղիսաբեթի տօն։
Նիքօլա տէ լիրա 1380։

Հայք՝ նախկին երեք ընդհանրական ժողովները կընդունին, և ազգային ժողովներ ալ ունին։

Յոյնք՝ եօթը ընդհանրական ժողով կընդունին, և ազգային ժողովներ ալ ունին։

Հռովմէականք՝ որչափ որ ուզեն ժողովներ ունին, բացէ դուռը։

Բողոքականներէն կան՝ մինչ չորս ժողովը կընդունին։

Են՝ յետագայ ժողովներն չեն ընդունիր՝ բայց նոյն ժողովոց վճիռներէն մասամբ մը կընդունին։

Մէկը հիմա ճշմարտութիւնը գտնելու համար պէտք է հետեւիլ սուրբ գրոց փաստին։

Ինչպէս չարականները դարերու գրուածք են՝ նմանապէս աւելուածներն դարերու արդիւնք են։

## ԿԵՆԱՑ ՃԱՄԲԱՆ

Ես եմ ճանբան ու ճշմարտութիւն եւ կեանքը

*Խաչին քաւութեան փրկարար Զոհը՝ տուաւ զայս կտակ իր աշակերտաց,*
*Երթալ քարոզել Աւետարանը՝ նաև մկրտել նոցա պատուիրեաց։*

*Կենաց ճամբան մտած ես ապաշխարելով,*

*Զզուելի մեղացդ վրայ զղջալով, և դարձած ես Աստուծոյ պատուիրանացը հնազանդելով նեղ դռնէն ներս մտնելու որ քեզ յաւիտենական կենաց ճամբան կը տանի, Մտթ. Է. 14։ Յով. Դ. 7-10։*

*Կենաց ճամբան մտած ես հաւատալով,*

*Աստուծոյ Որդւոյն անունին, որ է միակ փրկիչ աշխարհիս և ուրիշ մէկով չիկայ փրկութիւն, քանզի անկէ զատ չիկայ այլ անուն երկնից տակը մարդոց տրուած, որ կարող ըլլանք փրկուելու, Գործ. Դ. 12։*

*Ճշմարիտ ճշմարիտ կըսեմ ձեզ թէ՝ ով որ կըլսէ իմ խօսք և կը հաւատայ նորա որ զիս խրկեց, ունի յաւիտենական կեանք, և դատապարտութեան տակ չիյնար այլ՝ մահուանէ ի կեանս փոխուած է, Յովհ. Ե. 24։*

*Կենաց ճանբան մտած ես մկրտուելով,*

*Թաղմամբ կնքուելու Հօր՝ և Որդւոյ՝ և սուրբ Հոգւոյն անուամբը, որ է նախադուռն ի կտակի համբարձման փրկչին տեսանելի անդամակցութեան և որդեգրութեան Քրիստոսի Եկեղեցւոյն ի հնազանդութիւն, Մարկ ԺԶ. 16։*

*Եթէ այս կերպով ապաշխարած, հաւատացած և մկրտուած ես կենաց ճամբան մտած ես, ըստ վկայութեան և քարոզութեան մետասան առաքելոց, որով մեղացդ թողութիւն և սուրբ Հոգւոյն պարգևը առած ես, Գործ. Բ. 14. 37. 39։*

Նախ տպաւորել Հաւատով Փրկչին տուին պատուիրան,
Ի Ջուր իջնելով ըստ Եթովպացւոյն օրինակութեան,
Այսպէս ուսուցին մեր մեղաց ներում Հօրէն գթութեան,
Որ առնենք շնորհք Հոգւոյն պարգևօք վերածնութեան։
Տեսիր սոյն կարգը սուրբ Առաքելոց բանիւ միաբան,
Հոն Պետրոս կայնած քարոզեց ձայնիւ լսող բազմութեան,
Ապաշխարեցէ՛ք և հաւատացէք ի մկրտութեան,
Որով վայելէք մեղաց թողութիւն Հոգւին սրբութեան։
Մեր մեղաց ներող չէ մկրտութիւն՝ է ջուրն փրկութեան,
Զի արիւն Փրկչին է ներող մեղաց կեդրոն մի միայն,
Սոյն մանեակք միջոցք պարտիք են ի մեզ հնազանդութեան,
Այսպէս կատարած կըլլանք որդեգիր Հօրն ողորմութեան։
Ո՛չ թէ սրսկամբ ոչ անապաշխար՝ այլ դաւանական,
Շրթաբեր ձայնիւ մնալ հաւատով լինիլ խոստովան,
Այսպէս կը խօսի կենաց պատգամը սուրբ Աւետարան,
Կը կանչէ մեզի հաւատալ Փրկչին մտնել Աւազան։

### Քրիստոնէական ներքին սուրբ կրօնք

Է հաւատալ ի միութիւնն Աստուծոյ, և Հօրն ողորմութեան շնորհացն,
Է հաւատալ Յիսուսի փրկագործութեան խաչին արդեանց շնորհացն,
Է հաւատալ սուրբ Հոգւոյն ներգործիչ և սրբացուցիչ շնորհացն։
Եւ այսպէս երկրպագել նոցա միշտ հոգւով և ճշմարտութեամբ,
Սուրբ սրտիւ՝ անկեղծ հաւատով՝ սիրոյ պտղաբերութեամբ,
Ցուցանելով ի կէտ կոչման վերին մրցանակին սրբութեամբ։

### Այս իսկ է ներքին սուրբ կրօն

Իսկայլ Եկեղեցական դրութիւնք, են արտաքին և մտային
Որք իրերու, կերպերու, ձևերու, վրայ տես կը վիճին,
Որմէ առաջ եկած է անթիւ բաժանումներ
Հիմայ ալ կան շատ մը յարանուանական անուններ,
Ամեն մէկը իրենը հաստատելու ջանիւք կը փութայ
Վարդապետական քաշքշումներն եղած է առարկայ։

Որոնք իրարու այսպէս կըսեն «Անոնք մեզմէ չէին, թէ որ մեզմէ ըլլային մեր քով կը մնային, ասկէ յայտնի կըլլայ որ մեզմէ չեն» Ա. Յովհ. Բ. 19։

Ա՜հ սիրոյ և միութեան վարդապետին դասը
Անէլութեան և բաժանման խորոց եղած է,
Երկնային սրբութեան հոգևոր այն կեանքը
Մարմնաւոր վէճերու առարկայ եղած է։

Վարդապետական երեք բանալին է:

Նկարագրապէս, Այլաբանապէս, Խորհրդապէս
Հին կտակարանի եկեղեցին ունէր նկարագրական արարողութիւն և ձեւ,
Բայց նորը չունենալով ըստ նոյն օրինակի արարողութիւն և ձեւ,
Ամեն մէկ եկեղեցի, ունի իր Հայրապետ հիմնադիրը,
Ի մասին արտաքին ձեւակերպեալ կարգադրութեանը։
Առաքեալք մի միայն զՔրիստոս Փրկիչ աշխարհի քարոզեցին և ոչ թէ,
Ձեւ ու արարողութիւն, Աւետարանի պատուէրը «անհատական է»
Ամեն հաւատացելոց կը խօսի, նա սրտին Աստուածպաշտութիւնը կը խնդրէ,
Հաւատք սիրով միացած թէ առ Աստուած և թէ առ մարդիկ։
Մի բան՝ Աւետարանը է սրտի կրօն, նա սրտին խորանը, սրտին զարդը
Կը խնդրէ, արտաքին ձևերու հետևողը ունի դաս ձևական,
Իսկ ներքինին հետևողը, ունի դաս հոգևոր և անմահական։

## ՅԱՒԻՏԵՆԱԿԱՆ ԿԵԱՆՔ

Հ. Ո՞ւր պէտք է դիմենք «Յաւիտենական կեանքը» ստանալու համար։

Պ. Մի միայն Փրկչին Յիսուսի Քրիստոսի։
Ասիկայ է ճշմարիտ Աստուած և յաւիտենական կեանքը,
Յովհ. Ե. 20։

Հ. Ինչպէ՞ս գիտելու ենք,
Պ. Հաւատալով անոր։
Աստուած մեզի Յաւիտենական կեանք տուաւ, ու սա կեանքը անոր Որդւոյն մէջն է, ան որ Որդին ընդունած է կեանք ունի, եւ ան որ Աստուծոյ Որդին ընդունած չէ կեանք չունի, Յովհ. Ե. 10–11։

Հ. Բաւական է մի՞ մի միայն հաւատքը,
Պ. Ո՛չ, այլ պարտաւորենք նորա խօսքերուն մտադիր ըլլալու։ Ճշմարիտ ճշմարիտ կըսեմ ձեզի թէ՝ ան որ իմ խօսքս մտիկ կընէ, եւ կը հաւատայ անոր որ զիս ղրկեց, յաւիտենական կեանք ունի ու դատապարտութեան տակ չիյնար, այլ մահուանէ դէպ ի կեանքը անցած է, Յովհ. Ե. 24։

Հ. Ո՞ւր գտնենք Քրիստոսի խօսքը,
Պ. Աւետարանին մէջ, Գաղտ. Ա. 6–9։

Հ. Ո՞րն էր ի համբարձման Առաքեալներուն վերջին ապսպրածը,
Պ. Գացէք բոլոր ազգերը աշակերտեցէք եւ մկրտեցէք զանոնք՝ յԱնուն Հօր, եւ Որդւոյ, եւ Հոգւոյն սրբոյ, եւ սորվեցուցէք անոնց ան ամեն բաները որ պահեն, ինչ որ ես ձեզի պատուիրեցի, Մատթ. ԻԸ. 19–20։

Հ. Ինչէ՞ աշակերտիլը,
Պ. Է համակերպիլ Փրկչին դասերուն եւ արդեամբ կատարել զանոնք,
Ամեն անոնք որ Քրիստոսի վարդապետութեան մէջ չեն կենար անոնք Աստուած չունին, Բ. Յովհ. Ա. 9։ Բ. Թեսաղ. Ա. 8–10։

## ԿԱՏԱՐԵԱԼ ՍՐԲՈՒԹԻՒՆ

Եւ անոր Որդւոյն Յիսուսի Քրիստոսի արիւնը կը սրբէ զմեզ ամեն մեղքէ Ա. Յովհ. Ա. 7։

Այս մեղաւոր աշխարհիս մէջ, սա խօսքը ճշմարիտ եւ ամենայն ընդունելութեան արժանի է, եւ անուշ ձայն, եւ

կատարեալ փոփոխանք մի է, ինչպէս մարմնոյ մաքրու-թիւնը ջրով կըլլայ, նոյնպէս Հոգւոյն մաքրութիւնը Յի-սուսի սրբացուցիչ արեամբը կըլլայ, ինչու որ անիկայ է միակ պատարագ և ամենաքաւական սրբիչ, հին օրինաց մէջ կենդանեաց արեան սրսկումը՝ էր օրինակ Գառին Աստուծոյ, որ աշխարհիս մեղայը համար պիտի թափուէր, ուստի մի միայն Յիսուսի արիւնը՝ կը սրբէ զմեզ ամեն մեղքէ ։

Քանզի Յիսուսի արիւնը Աստուծոյ Որդւոյն արիւնն է, ոչ օրինօք եղած սրդարութեամբը կը սրբէ, այլ շնոր-հաց արդեամբը զմեզ ամեն մեղքէ կը սրբացնէ ։

Հին տնտեսութեան ստուերական սրբութիւնը, էր օ-րինակութիւն, բայց ճշմարիտ իրական սրբութիւնը Աստով կըլլայ ։

Աստուծոյ ժողովրդեան Աստով փրկութիւն կը քա-րոզուի, ասիկայ է միակ որ զմեզ ամեն մեղքէ կը սրբէ, թէ որ ըսենք մենք թէ մեղք չունինք կը խաբենք զմեզ. և մեր մէջ ճշմարտութիւն չիկայ ։ Սուրբ Գիրք մեզ կը պատկերէ մեղաւոր ըլլալնիս, ամեն վիճակաւ թէ ծնո-ղապէս և թէ գործնապէս, և թէ անկեալ վիճակի են-թակայ ըլլալնիս ։ Եւ կը յուսայնէ մեզ թէ՝ մեր մեղքը ծովի ջուրի նման ալ շատ ըլլայ, Յիսուսի արիւնը մեզ ամեն մեղքէ սրբելու զօրութիւնը ունի ։

Տեսէք որչափ անսահման սրբացուցիչ է Յիսուսի ար-իւնը որ զմեզ ամեն մեղքէ կը սրբէ ։ Բաւ է՝ որ դիմենք Յիսուսի արեանը և խնդրենք հաւատով մեր մեղաց սր-բութիւնը, և նորոգուած շնորհօք սուրբ Հոգւոյն լինինք նոր մարդ և նոր արարած ։

### Չիկայ մի արդար Հռովմ. Գ. 10–12

Չիկայ բնաւ մի արդար, այս աշխարհէս ճամբորդած,
Չիկայ բնաւ մի սուրբ մարդ, անրծութեամբ կեանք վարած ։
Նախածնողքէն մինչ այն վերջ, ամենք մեղքով են շաղուած,
Ո՞վ կը պարծին ըսելու, թէ են մաքուրք սրբուած ։
Օրենք մեզնէ միշտ կուզէ, ամբողջութեամբ պահելու,
Նաև խստիւ կը վճռէ, կուտայ անէծք աչարկու ։

Եթէ սյապէս ուրեմն, ամեն մարդիկ կան մեղօք,
Միայն կեանք կայ այն Փրկչէն, և փրկութիւն շնորհօք։
Նա թափելով իր արիւն, մեզ անէծքէն ազատեց,
Շնորհելով սրբութիւն, կենաց հոգին պարգևեց։
Ո՜վ օրենքին կրթնած, կրնայ ըսել խորհելով,
Զունի նա մեղք գործուած, է սրբուած ինքն իրմով։
Ո՛չ ոք կրնայ ըսելու, միայն Փրկչին սուրբ արիւն,
Կրնայ սրտէն լուալու, մեր մեղքերը սևագոյն։
Արդ մօտենանք սուրբ խաչին, մեծ հաւատքով խոնարհած,
Խնդրենք ներում մեր մեղքին, և գտօղին շնորհաց։

## Երեկոյին շնորհք

Ան երկնային սուրբ շնորհքը՝ շնորհէ մեզի ո՜վ Հայր,
Եւ սուրբ Հոգւոյն պարգևները՝ շնորհէ մեզի ո՜վ Հայր,
Շնորհէ, շնորհէ, շնորհէ մեզի ո՜վ Հայր։

Կենաց բանին խոստումները՝ շնորհէ մեզի ո՜վ Հայր,
Որով վայլենք փրկութիւնը՝ շնորհէ մեզի ո՜վ Հայր,
Շնորհէ, շնորհէ, շնորհէ մեզի ո՜վ Հայր։

Վերածնող սրբութիւնը՝ շնորհէ մեզի ո՜վ Հայր,
Հագնինք երկնից նորութիւնը՝ շնորհէ մեզի ո՜վ Հայր,
Շնորհէ, շնորհէ, շնորհէ մեզի ո՜վ Հայր։

## Աղօթք առաւօտեան

Ո՜վ Ամենակալ ամենամեծդ Աստուած, որ այս առաւօտուան աղօթքը ու բանաւոր պաշտօնը քու անապական և երկնային խորանիդ մէջ ընդունէ, և ծագէ մեր վրայ արդարութեան և իմաստութեան լոյսդ, մեզ լուսոյ որդի ըրէ ցերեկուան որդի, որպէս զի գալիք օրերնուս մէջ մեր կեանքը քու վախովդ անցնենք, և մեր ընթացքը աւանց գայթակղութեան կատարենք, ինչու որ դուն ես մեր օգնականը ու փրկիչը ու քեզի կը վայելէ փառքը պատիւը և իշխանութիւնը հիմայ ու միշտ և յաւիտեանս յաւիտենից, Ամէն

## Աղօթք գիշերային

Ո՛վ բարեաց պարգևող և աղբիւր խաղաղութեան սուրբ Հոգիդ Աստուած ճշմարիտ, այս գիշերուան մէջ մեր միտքը ու խորհուրդները ամեն տեսակ դիւական խռովութենէ խաղաղացուր, որպէս զի քու շնորհքովդ անցաւոր կեանքէս առաջնորդուած հասնինք երկնից խաղաղաւէտ օթևանները, ուր փառաւորելու Հայր և Որդին և զսուրբ Հոգին յաւիտեանս յաւիտենից, Ամէն։

## Աղօթք հանգստեան, կիրակի

Շնորհակալ ենք քեզմէ՝ ո՛վ յաւիտենական սուրբ Հայր, որ մեզ կրկին այս սուրբ հանգստեան օրուանը հասուցած՝ միութեամբ քու սուրբ Ներկայութեանդ գալու և արժանի կերպիւ քեզ մեր երկրպագութիւնները մատուցանելու մեզ արտօնութիւն շնորհեցիր։ Բաց ո՛վ Տէր, մեր շրթունքները՝ որ մեր գոհաբանութիւններն ու խնդրուածները հոգւով և ճշմարտութեամբ քեզ մատուցանենք, բաց՝ նաև մեր ականջները որ քու սուրբ խօսքերէդ այսօր մեր լսածն ու սորվածը հնազանդութեամբ կատարելու փութանք, և յօժարած վազենք դէպ ի մրցանակին վայելմանը, այս ամենը կը խնդրենք Յիսուսի Քրիստոսի մեր փրկչին սիրուն անուամբը, Ամէն։

## Աղօթք միութեան

Ո՛վ բարեգութ երկնաւոր սուրբ Հայր՝ կաղաչենք շընորհէ մեզ այսօր քու խօսքերէդ մեր լսածներն ու սորվածները երբև ծառ պտղաբեր արմատ կապած մեր սրտերուն մէջ պտղաբերի շնորհօք սուրբ Հոգւոյն, օրհնէ՛ սոյն միութիւնը որ ճշմարտութեան և սրբութեան մէջ յարատևէ։ Օրհնէ՛ որ յառաջադիմէ միութեան կապ եղած սիրոյ մէջ։ Նաև օրհնէ՛ որդիական հնազանդութեամբ քեզ միայն ի սրտէ ծառայէ, և այսպէս ողորմու-

թեան շնորհացդ արժանացած, փառաւորէ միշտ Հայրը՝ ու Որդին և սուրբ Հոգին, հիմայ և միշտ և յաւիտեանս յաւիտենից, Ամէն ։

## Աղօթք գոհաբանական

Կը գոհանանք քեզմէ ով Հայր գթութեան և Աստուած ամենայն ողորմութեան և մխիթարութեան, որ մեզ՝ մեր Տէր Յիսուսի Քրիստոսի քու սիրելի Որդւոյդ անգին սուրբ արեամբը արդարացուցիր ։ Կը գոհանանք քեզմէ՝ որ մեզ տաճար և բնակարան ըրած, շնորհաբուխ սուրբ Հոգիդ մեր մէջ բնակեցնելու՝ արժանացուցիր ։

Կը գոհանանք քեզմէ՝ որ մեզ սիրոյդ անճառելի բարերարութիւններովդ ճոխացուցիր ։ Կը գոհանանք դարձեալ ով սուրբ Հայր որ այս սուրբ հանգստութեանդ օրուանը մէջ շնորհացդ աթոռին առջին ներկայանալու և դարձեալ մեզի պէտք եղած ողորմութիւնը խնդրելու մեզ արտօնութիւն շնորհեցիր ։ Արդ կաղաչենք ով սուրբ Հայր մեզ ճշմարիտ Որթին ճիւղերը ըրէ, և որբէ զանոնք որ առատապէս սուրբ Հոգւոյն պտուղներովը շատանայ, հաստատէ՛ զմեզ այն անկործան յաւիտենական վէմին վրայ, որ որևէ վտանգներէ զերծ մնանք հաւատոյ, յուսոյ և սիրոյ պատուիրանաց հնազանդութեան մէջ յարատևենք, և յետ այսմ կենաց, քու գիրկդ իյնալով վայելենք յաւիտենական Հայրական սուրբ օրհնութիւնդ Ամէն ։

## Աղօթք խաղաղութեան

Քու խաղաղութիւնովդ ով Քրիստոս մեր փրկիչը, որ միտքերէ ու խօսքերէ խիստ վեր է, ամրացուր մեզի, և առանց վախի պահէ՛ ամեն չարիքներէն, միացուր մեզի քու ճշմարիտ երկրպագողներուն կարգին մէջ, որոնք հոգիով և ճշմարտութիւնով քեզի երկրպագութիւն կը մատուցանեն, ինչու որ ամենասուրբ երրորդութեանդ կը վայելէ փառքը իշխանութիւնը հիմայ ու միշտ յաւիտեանս, Ամէն ։

Անքննելի անհասանելի երեք ինքնութեանդ հաստա-
տող ընդունող և անբաժանելի միացեալ սուրբ Երրոր-
դութեանդ կը վայելէ փառքը իշխանութիւնը ու պա-
տիւը յաւիտեանս ամեն։

## Օրհնութիւն Հօր

Դուն կ'օրհնես զանոնք, որոնք որ կ'օրհնեն քեզի ով
Տէր, և կը սրբես քեզ յուսացողները, ազրեցուր քու
ժողովուրդդ և օրհնէ քու ժառանգութիւնդ, պահէ ե-
կեղեցւոյ ամբողջութիւնը, սրբէ զանոնք՝ որոնք որ ողջու-
նեցին սիրով քու տանդ վայելչութիւնը, փառաւորէ
դուն մեզի քու Աստուածային զօրութիւնովդ, և մի թո-
ղուր քեզի յուսացողները, շնորհէ քու խաղաղութիւնդ
բոլոր աշխարհի եկեղեցիներու, քահանաներու քրիստո-
նեայ թագաւորներու, և նոցա զինուորած զաւկներու ու
բոլոր ժողովրդեան, ինչու որ բոլոր բարի տուրքերը և
բոլոր կատարեալ պարգևները վերէն քեզմէ են իջած որ
ես լուսոյ Հայրը, ու քեզի կը վայելէ փառքը իշխանու-
թիւնը ու պատիւը յաւիտեանս, Ամէն

Օրէնքին ու մարգարեներուն կատարումը դուն ես
ով Քրիստոս Աստուած փրկիչ մեր, որ լցուցիր Հայրական
քու բոլոր տնօրէնութիւնդ, լեցուր մեզ ալ քու սուրբ
Հոգիովդ։

Եկեղեցին Հայաստանեայց որչափ մօտ է պատկերիս
Է լաւագոյն և համեմատ Աստուածաշունչ մատենիս,
Առ կշիռը կշռէ իրեր ճշտիւ քննէ փորձելով
Թէ որ տեսնես նմանատիպ յայժամ պատուէ յարգելով։
Եկեղեցեայց տարբերութիւնք կը պատկերէն մեզ ձևեր
Մէկ է հիմը տես շինուածքներ ունին տարբեր շուք զարդեր,
Սիրով նախնիք զարդարեցին իբրև պատիւ երախտեաց
Վայելչութիւն ի մեծարանս Աստուածային սուրբ փառաց։
Իւր պարզութիւն նախադասէ քան այլ և այլ եկեղեցիս,
Իսկ ի հաւատս չիք խառնութիւն կը պատկերէ հայելիս։

Ջրով եղած մկրտութիւնը շնորհիւ սուրբ Հոգւոյն սրտին մաքրութիւնը կը պահանջէ։

Դրոշմը դաւանութեամբ Քրիստոնէական անունը մեզ կ՚օծէ։

Ապաշխարութիւնը սրբութեամբ ապրելու մեզ կ՚առաջնորդէ զղջմամբ սրտի։

Հաղորդութիւնը հաւատով մեզ Քրիստոսի հետ միանալու կը կապէ։

Ձեռնադրութիւնը պաշտօնական յատկութիւնը կը պատկերէ։

Ամուսնութիւնը Քրիստոսի եկեղեցւոյն հետ ունեցած սէրը կ՚օրինակէ։

Վերջին օծումը աղօթիւք և հաւատով ներելի մեղքերը կը սրբէ։

## ՀԱՅԱՍՏԱՆԵԱՅՑ ԵԿԵՂԵՑՒՈՅ ԴԱՒԱՆՈՒԹԻՒՆԸ

Կը հաւատայ Ամենասուրբ Երրորդութեան Հօր և Որդւոյ և սրբոյ Հոգւոյն. մի Աստուածութեան։

Կը հաւատայ Քրիստոսի մարդեղութեանը, ծննդեանը, խաչելութեանը, թաղմանը, յարութեանը, համբարձմանը և համայն տնօրէնութեանցն։ Հօր Աստուծոյ աջ կողմը նստելուն, բարեխօսութեանը և միջնորդութեանը և մի միայն փրկիչ ըլլալուն։

Կը հաւատայ սուրբ Հոգւոյն անեղ և կատարեալ ըլլալուն, որ կը սրբացնէ ճշմարիտ հաւատացելոց սրտերը, և կը լուսաւորէ միտքերը դէպ ի Քրիստոսի գիտութեան լուսոյն դիմելու։

Խաչին զոհը աշխարհիս մի միայն փրկութիւնը կը քարոզէ, կընդունի մկրտութեան խորհուրդը իբրև առաջին Քրիստոնէական եկեղեցւոյն անդամակցութեան դուռն, և ազատութիւն ի նախահօրն մեղաց. կը կատարէ Ջրով թաղմամբ և ամենասուրբ Երրորդութեան Հօր և Որդւոյ և սրբոյ Հոգւոյն անուամբը երիցս թաղելով ի ջուր, որով

կընդունուի մկրտեալը յորդեգրութիւն Հօրն երկնաւորի սրբեալ ի մեղաց և զշնորհս Հոգւոյն սրբոյ վայելող։

Կը հաւատայ սուրբ Հաղորդութեան հոգևոր խորհրդոյն և կը կատարէ հացով և գինիով, և կընդունի թէ հոգևորապէս է մարմին և արիւն կենարարին Յիսուսի, որն որ կտակեց յիշատակել հաւատացելոց մինչ ի միւսանգամ գալն ։

Կընդունի և կը կարդայ Մարգարէական գրուածներէն, Առաքելոց Նամակներէն և սուրբ Աւետարանէն, և Դաւթի սաղմոսներէն, ունի ընտիր աղօթքներ, երգեր, Տէրունի և ապաշխարութեան շարականներ, կընդունի Նիկիական հանգանակը զոր կը կարդայ օրին և պատշաճին ։

Կընդունի և սիրով կը պատուէ և կը կատարէ ինչ որ Սրբազան մատեանները կը քարոզեն, որ Աստուծոյ մարդը կատարեալ ըլլայ, կը պատուէ Տէրունի օրերը որ է Կիւրակէ նաև Տէրունականք օրերն՝ ի յիշատակի սիրոյ և երախտեաց շնորհացն Աստուծոյ ։

Կը յարգէ Քրիստոսի դիւցազուններն՝ և նոցին նկարներն իբրև հայելի և օրինակ՝ ի ցոյց զգալի տեսութեամբ յիշատակեալ կը մեծարէ, և կը տօնէ մաղթանօք «վասն» բառէն ուժ առնելով և Յայտ. Ե. 8 համարէն խրախուսուելով։

Կ՛աղօթէ հաւատով յուսով ննջեցելոց համար խնդրելով նոցա գթութիւն, Պօղոս Բ. Տիմոթ. Ա. 18 համարէն սորվելով։

Խաչով կ՛օծէ դրոշմի նշանակութեամբ իբրև միջոց Հոգւոյն շնորհացն, Քրիստոս յոյն բառին նշանակութեամբը է օծեալ. ի հնումն թագաւորք և քահանայք կ՛օծուէին խաչով, Դ. Թագ. Թ. 1-16։ Ի նորումն է պատուէր առաքելական, Յակ. Ե. 14։

Քահանայական ներողութիւնը կը պատուիրէ ապաշխարողաց և ճշտիւ զղջացելոց ըստ Տէրունեան, բանի, Յովհ. Ի. 23։ Իսկ պսակը ու կարգը ի փրկութիւն՝ ոչ ամենեցունց պէտք կը համարի։

Ունի զարդեր, ձևեր, լաթեր, պահքեր, զորս կը գործածէ ի վայելչութիւն եկեղեցւոյ Աստուծոյ, ի մեծարարանս փառացն Նորին սրբութեան։

Ունի եպիսկոպոսներ, երէցներ, սարկաւագներ և դըպիրներ։

Կընդունի նախկին երեք ժողովներն, կը պահէ Հաւատքը, Յոյսը և Սէրը, որ է հիմն կատարելութեան Քրիստոնէական սուրբ կրօնի։

Կընդունի Քրիստոնէական սուրբ Եկեղեցին ի մի միութիւն և չը խտրեր բնաւ մէկը փրկութեան կեդրոնէն, այլ համայն ճշմարիտ հաւատացելոց կայ փրկութիւն կը խոստովանի, և կը մաղթէ աղօթիւք վասն ամենայն հաւատացելոց երկնային սուրբ և երջանիկ երանութիւնը վայելելու յուսով։

Եւ կընդունի ու կը հաւատայ եկեղեցւոյն գլուխը է Քրիստոս, և Նորին հաւատացեալներն անդամք են ի Քրիստոս Յիսուս։

Ահա այս է Հայաստանեայց Եկեղեցւոյն պատկերը
Են որք մերժեն և կը հերքեն սոյն ճշմարիտ ըսուածքը,
Յօժարեցայ ճիշտ նկարել պէս հայելի եղածը
Օտարներու խօսուածքներով չըլլան երբէք ծռածը։
Կենաց բանին ով որ կուզէ անկեղծութեամբ հետևիլ
Ունի աստի վայելքներէ ամեն կերպիւ զրկուիլ,
Նա կը փութայ համակերպեալ ճիշտ պատկերիս նմանիլ
Պէս աշակերտ հալածանօք խաչն առած յարմարիլ։

## ՔՐԻՍՏՈՍԻ ՎՐԱՅ ՄԱՐԳԱՐԷՈՒԹԻՒՆՔ

| | Հին Կտակարանէ | Նորէն առա |
|---|---|---|
| Որդի Աստուծոյ ըլլալը | Սաղմ. Բ 7 | Ղուկ. Ա 32-35 |
| Կնոջան սերունդ ըլլալը | Ծննդ. Գ 15 | Գաղատ. Դ 4 |
| Աբրահամին սերունդը ըլլալը | Ծննդ. ԺԷ 7 | Գաղատ. Գ 16 |
| Իսահակին սերունդը ըլլալը | Ծննդ. ԻԱ 12 | Եբրա. ԺԱ 17-19 |
| Դաւիթին ցեղը ըլլալը | Երեմ. ԻԳ 5 | Հռովմ. Ա 3 |
| Ժամանակին գալը | Դանիէ. Թ 21-25 | Ղուկ. Բ 1 |
| Կոյսէ ծնանիլը | Եսայ. Է 14 | Մատթ. Ա 18 |
| Էմմանուէլ ըսուիլը | Եսայ. Է 14 | Մատթ. Ա 22-23 |
| Բեթլէհէմին մէջ ծնիլը | Միքի. Ե 2 | Մատթ. Բ 1 |
| Թագաւորաց երկրպագութիւնը | Սաղմ. ՀԲ 10 | Մատթ. Բ 1-11 |
| Բեթլեհէմի տղոց ջարդուիլը | Երեմ. ԼԱ 15 | Մատթ. Բ 16-18 |
| Եգիպտոսէն կանչուիլը | Ովս. ԺԱ 1 | Մատթ. Բ 15 |
| Մկրտչին նախագալը | Եսայ. Խ 3 | Ղուկ. Ա 17 |
| Սուրբ Հոգիէն օծուիլը | Սաղմ. ԽԵ 7 | Յովհ. Գ 34 |
| Մովսէսի նման Մարգարէ լինիլը | Բ. Օրինց. ԺԸ 15-18 | Գործ. Գ 20-22 |
| Մելքիսեդեկեան քհնյ. լինիլը | Սաղմ. ՃԺ 4 | Եբրա. Ե 5-6 |
| Քարոզութիւն ընելը | Եսայ ԿԱ 1-2 | Ղուկ. Գ 16-43 |
| Գալիլեայէն սկսիլը | Եսայ Թ 1-2 | Մատթ. Դ 12-23 |
| Փառօք Երուսաղէմ մտնելը | Զաքր. Թ 9 | Մատթ. ԻԱ 1-5 |
| Տաճարը մտնելը | Մաղաք. Գ 1 | Յովհ. Բ 13-16 |
| Աղքատ ըլլալը | Եսայ. ԾԳ 2 | Մարկ. Զ 3 |
| Հեզ, փառք չունենալը | Եսայ. ԽԲ 2 | Մատթ. ԺԲ 16-19 |
| Կարեկից և ցաւակից ըլլալը | Եսայ. Խ 11 | Եբրա. Գ 15 |
| Նենգութիւն չունենալը | Եսայ. ԾԳ 9 | Ա. Պետր. Բ 22 |
| Նախանձաւոր ըլլալը | Սաղմ. ԿԹ 9 | Յովհ. Բ 17 |
| Առակներով քարոզելը | Սաղմ. ՀԸ 2 | Մատթ. ԺԳ 34-35 |
| Հրաշքներ գործելը | Եսայ. ԼԵ 5-6 | Յովհ. ԺԱ 47 |
| Նախատինք կրելը | Սաղմ. ԻԲ 6 | Հռովմ. ԺԵ 3 |
| Եղբայրներէն մերժուիլը | Սաղմ. ԿԹ 8 | Յովհ. Է 5 |
| Գայթակղութեան քար ըլլալը | Եսայ. Ը 14 | Ա. Պետր. Բ 8 |
| Հրեայներէն ատուիլը | Սաղմ. ԿԹ 4 | Յովհ. ԺԵ 24-25 |
| Իշխաններէ մերժուիլը | Սաղմ. ՃԺԸ 22 | Յովհ. Է 48 |
| Իր Բարեկամէն մատնուիլը | Սաղմ. ԽԱ 9 | Յովհ. ԺԳ 18-21 |
| Իր աշակերտները զինքը ձգելը | Զաքր. ԺԳ. 7 | Մատթ. ԻԶ 31-56 |
| Երեսուն արծաթի ծախուիլը | Զաքր. ԺԱ 12 | Մատթ. ԻԶ 15 |
| Բրուտին ագարակին գինը | Զաքր. ԺԱ 13 | Մատթ. ԻԷ 7 |
| Չարչարուիլը | Սաղմ. ԻԲ 14-15 | Ղուկ. ԻԲ 42-44 |
| Ուրիշներուն համար | Եսայ. ԾԳ 4-12 | Մատթ. Ի 28 |